## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին:
Հեռախոս՝ 2—52—78

---

# ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի օրը սովետական բազմազգ ժողովուրդները նշում են քաղաքական ու աշխատանքային բուռն վերելքի պայմաններում: Ոգեշնչված ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի, պարտիայի ու կառավարության վերջերս ընդունած պատմական որոշումներով, նրանք ուժ և եռանդ չեն խնայում Հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար:

Տասնյոթ տարի առաջ, 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, Սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարը հաստատեց ՍՍՌՄ Կոնստիտուցիան (Հիմնական Օրենքը):

ՍՍՌՄ Կոնստիտուցիան գրի առավ և օրենսդրական կարգով ամրապնդեց սովետական մարդկանց պայքարի ու հաղթանակների արդյունքները, որոնք ձեռք են



4223
53

բերվել Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության կենսագործման և նրա անմիջական ղեկավարության շնորհիվ։

Անցած 17 տարիները մեր հիասքանչ Հայրենիքի համար հանդիսացել են սոցիալիստական հասարակարգի հաղթանակի և սովետական դեմոկրատիզմի ծավալման տարիներ։ Կոնստիտուցիայի ջերմ արևի տակ պատմության մեջ չտեսնված թափով ծավալվեցին սոցիալիստական հասարակարգի այնպիսի շարժիչ ուժեր, ինչպիսիք են՝ հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամությունը և սովետական հայրենասիրությունը։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը պատմական կարճ ժամանակում կյանքում իրականացրեց այն ամենը, ինչի մասին երազում էին մարդկության լավագույն մտքերը անցյալում և ինչի մասին այժմ երազում ու պայքարում են կապիտալիստական, գաղութային ու կախյալ երկրների ճնշված-շահագործվող մասսաները։

Սովետական Միությունում ընդմիշտ վերացված է մարդու շահագործումը մարդու



կողմից, իսկ արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը հաստատված է որպես մեր հասարակության անսասան հիմքը։ Էկոնոմիկայի սովետական սիստեմը չգիտե ճգնաժամեր, գործազրկություն, ժողովրդի աղքատություն ու քայքայում։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայով բոլոր քաղաքացիներին, անկախ նրանց կրթական, գույքային, նստակեցության ցենզից, ազգային, ռասսայական պատկանելիությունից, կրոնական դավանանքից, սեռից, տրված է իրավահավասարություն երկրի տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։ Նոր Կոնստիտուցիան ՍՍՌՄ ժողովուրդների համար ստեղծեց եղբայրական համագործակցության սկզբունքով միասնական ընտանիք, որոնք հաղթահարելով բոլոր դժվարություններն ու փորձությունները, երկրում կառուցեցին սոցիալիզմ և այժմ վստահ քայլերով գնում են դեպի կոմունիզմ։

Դրան հակառակ բուրժուական կոնստիտուցիաները օրինականացնում են մի բուռ դաժան շահագործողների կամայականությունները։ Վերացնում ու խեղդում են

դեմոկրատական բոլոր տեսակի ազատությունները և աշխատավորական լայն մասսաներին զրկում նույնիսկ քաղաքացիական տարրական իրավունքներից։

«Առաջ բուրժուազիան իրեն թույլ էր տալիս լիբերալություն անել,— ասաց Ի. Վ. Ստալինը պարտիայի 19-րդ համագումարում,— պաշտպանում էր բուրժուա-դեմոկրատական ազատությունները և դրանով իր համար մասսայականություն էր ստեղծում ժողովրդի մեջ։ Այժմ լիբերալիզմից հետք անգամ չի մնացել։ Այլևս չկա այսպես կոչված «անձի ազատությունը»,— անձի իրավունքներն այժմ ճանաչվում են միայն նրանց համար, ովքեր կապիտալ ունեն, իսկ մյուս բոլոր քաղաքացիները համարվում են մարդկային հում նյութ, որը պիտանի է լոկ շահագործման համար։ Ոտնակոխ է արված մարդկանց և ազգային իրավահավասարության սկզբունքը, այն փոխարինված է շահագործող փոքրամասնության լիիրավության և քաղաքացիների շահագործվող մեծամասնության իրավազրկության սկզբունքով»։

Բուրժուական երկրներում արտադրության գործիքներն ու միջոցները մասնավոր սեփականություն է, որը պաշտպանվում է



բուրժուական կոնստիտուցիաների կողմից։ Իսկ մասնավոր սեփականության անխուսափելի ուղեկիցներն են՝ ճգնաժամերը, գործազրկությունը, մասսաների աղքատացումն ու քայքայումը։ Ներկայումս կապիտալիստական երկրների համար սովորական երևույթ է դարձել կյանքի թանկությունը, գների անընդհատ բարձրացումը, հարկերի ուղղակի և անուղղակի ավելացումը և վերջապես գործազրկության բանակի սարսափելի աճը։ Վերջին երեք տարիների ընթացքում, էկոնոմիկայի միլիտարիզացիայի հետևանքով Արևմտյան Եվրոպայի երկրների աշխատավորների կյանքի պայմանները խիստ կերպով վատացել են։ 1949—52 թվականներին ապրուստի միջոցները Ֆրանսիայում թանկացել են 45 տոկոսով, Նորվեգիայում՝ 35, Ավստրիայում՝ 99, Ֆինլանդիայում՝ 57, Անգլիայում՝ 31, Հոլանդիայում՝ 21 տոկոսով և այլն։

ԱՄՆ-ում 1940 թվականին յուրաքանչյուր շնչին ընկնող հարկը եղել է 177 դոլար, 1945 թվականին՝ 340 դոլար, իսկ 1952 թվականին այն հասել է 557 դոլարի։

ԱՄՆ-ի աշխատավորների վաստակի մեծ մասը գնում է հարկեր վճարելու և ոչ թե իրենց սննդի համար։ 1951 թվականին

ԱՄՆ-ում աշխատավորները հարկեր են վճարել 75 միլիարդ դոլար, իսկ սննդի վրա կատարված ծախսերի գումարը կազմում է ընդամենը 55 միլիարդ դոլար։ Լատինական Ամերիկայում մշտական սովահարների թիվը հասնում է 90 միլիոն մարդու, իսկ Հարավ-Աֆրիկյան Միությունում սևամորթ լեռնագործները 10—14 անգամ քիչ են վարձատրվում, քան սպիտակամորթները։ Չտեսնված չափերի հասնող շահագործման հետևանքով տեղական բնակչության աղքատությունն ու մահացությունը խոշոր չափերի է հասել։

Մեզ մոտ, Սովետական երկրում, ընդհակառակը, մարդկանց աճող պահանջմունքների առավելագույն բավարարումը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության առարկան է։ Այդ է ապացուցում հետպատերազմյան տարիներին արդյունաբերական և պարենային ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցումը, որի շնորհիվ մասսայական սպառման ապրանքների գների ընդհանուր մակարդակը ՍՍՌՄ-ում վերջին հինգ տարում իջել է 50 տոկոսով, այսինքն երկու անգամ։ Այդ նշանակում է, որ այսօր սովետական սպառողը 50 ռուբլով կարող է



գնել այնքան ապրանք, որքան հինգ տարի առաջ նա գնում էր 100 ռուբլով։

Սովետական դեմոկրատիայի փայլուն ապացույցն են ՍՍՌՄ Գերագույն Սովետի, տեղական Սովետների և ժողդատավորների ընտրությունները, որոնք տեղի են ունենում ընդհանուր, ուղղակի, հավասար, գաղտնի քվեարկության միջոցով։ Այդ ընտրություններ վեր են ածվում համաժողովրդական տոնի և բնակչության 99 տոկոսից ավելին մասնակցում է ընտրություններին։

Այլ է ընտրությունների պատկերը կապիտալիստական երկրներում։ ԱՄՆ-ի կոնգրեսի վերջին ընտրություններին ընտրական իրավունք ունեցողների միայն 40 տոկոսը մասնակցեց։ Չնայած Անգլիայում ընտրությունները հայտարարված են «գաղտնի», բայց ընտրողների ցուցակներում հերթական համարներ դնելով բյուլետենների վրա, հեշտությամբ իմացվում է գաղտնիությունը։ 1950 թվականին Թյուրքիայի մեջլիսի լրացուցիչ ընտրություններին մասնակցեցին Ստամբուլում ընտրողների 8,7 տոկոսը, Բիթլիսում՝ 10 տոկոսը, Ղարսում՝ 13 տոկոսը, Մուշում՝ 4,5 տոկոսը։ Ավելի մեծ բռնություններ գործադրվեցին Արևմտյան



digitised by A.R.A.R.@

Գերմանիայում, 1953 թվականի «ընտրությունների» ժամանակ։

ՍՍՌՄ-ը իրավահավասար եղբայրական ժողովուրդների երկիր է։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր եղբայրական օգնությամբ ազգային ռեսպուբլիկաները դարձել են տնտեսական, քաղաքական, կուլտուրական, ծաղկած, առաջավոր ռեսպուբլիկաներ։

Ահա Սովետական Հայաստանը, որը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների օգնությամբ ու համագործակցությամբ դարձել է ինդուստրիալ, կոլտնտեսային գյուղատնտեսության առաջավոր ծաղկած երկիր։

Հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան ապահովում է բոլոր քաղաքացիների իրավունքներն ու դեմոկրատական ազատությունները, նա երաշխավորում և ապահովում է աշխատանքի, հանգստի, կրթության իրավունքը, ձրի բուժօգնություն ստանալու, ծերության, հիվանդության, աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովվածության իրավունքը։

Ի հակադրություն բուրժուական երկրների



կոնստիտուցիաների, ՍՍՌՄ Կոնստիտուցիան տարբերություն չի դնում տղամարդկանց և կանանց իրավունքների միջև։ Նրա համար բոլոր քաղաքացիներն իրենց իրավունքներով հավասար են։

Այսպիսով մեր երկրում ոչ միայն ազատագրված է կինը, այլև նա տղամարդկանց հետ հավասար իրավունքներ ունի երկրի քաղաքական-կուլտուրական շինարարությանն ակտիվորեն մասնակցելու համար։

Մեծ է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի համաշխարհային պրոգրեսիվ նշանակությունը։ Դա մի պատմական փաստաթուղթ է, որը պարզ ու սեղմ, համարյա արձանագրական ոճով, խոսում է ՍՍՌՄ-ում սոցիալիզմի տարած հաղթության փաստերի մասին, կապիտալիստական ստրկությունից ՍՍՌՄ աշխատավորների ազատագրման փաստերի մասին, ՍՍՌՄ-ում ծավալուն, մինչև վերջը հետևողական դեմոկրատիայի հաղթության փաստերի մասին։ Դա մի փաստաթուղթ է, որը վկայում է, թե այն, ինչ որ իրականացված է ՍՍՌՄ-ում, լիովին կարող է իրականացվել նաև մյուս երկրներում։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան մի մեղադրական ակտ է պատերազմի հրձիգների դեմ, որն ասում է, թե սոցիալիզմը և դեմոկրատիան անպարտելի են։

digitised by A.R.A.R.@

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՓՈԽՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻՋԵՎ

Ի. ԴՈՒԴԻՆՍԿԻ

*Գերմանական ֆաշիզմի և յապոնական միլիտարիզմի դեմ Սովետական Միության տարած համաշխարհային-պատմական հաղթանակների հետևանքով ստեղծվեց դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր, միասնական լագեր։ Սովետական Միության, Եվրոպայի ու Ասիայի ժողովրդա-դեմոկրատական պետությունների միջև հիմք դրվեց նոր տիպի միջազգային հարաբերությունների, ինչպիսին մինչև այժմ չգիտեր մարդկության պատմությունը։ Այդ հարաբերությունները հիմնված են բոլոր, մեծ թե փոքր, ժողովուրդների լիակատար և իրական իրավահավասարության վրա, փոխադարձ վստահության և ժողովուրդների բարեկամության, ազգային անկախության պահպանման և մյուս պե-*



*տությունների ներքին գործերին չմիջամտելու վրա։*

*Ազատ ժողովուրդների կայուն դաշինքը և համագործակցությունը տոգորված է սոցիալիստական հասարակարգ կառուցելու գաղափարով, մի հասարակարգ, որն ազատ է շահագործողների ճնշումից, որտեղ չկա քաղց, աղքատություն և գործազրկություն, որն ապահովում է աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելքը։*

*Միջազգային հարաբերությունների նոր տիպը իր կոնկրետ մարմնացումն է գտնում դեմոկրատական լագերի նոր համաշխարհային շուկայում։*

*Սոցիալիստական լագերի համաշխարհային շուկան, որը դեմ է կանգնում իմպերիալիստական ագրեսիվ լագերի համաշխարհային շուկային, այժմ ընդգրկում է 11 պետություն, որոնք միմյանց հետ կապված են եղբայրության և բարեկամության կապերով։ Նրանց թվի մեջ են մտնում՝ Սովետական Միությունը, Ժողովրդական Չինաստանը, Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Գերմանական Դեմոկրատական*



digitised by A.R.A.R.@

Ռեսպուբլիկան։ Այդ պետությունների տերի-
տորիայում, որը հավասար է ամբողջ երկրա-
գնդի մայր ցամաքի մեկ քառորդին, ապրում
և աշխատում են 800 միլիոն մարդ՝ ամբողջ
մարդկության մեկ երրորդը։

Համաշխարհային նոր շուկան վաճառա-
հանման դժվարություններ չգիտե։ Նա ազատ
է ճգնաժամերից և լճացումներից, որոնք
հատուկ են կապիտալիստական երկրների
արտաքին առևտրին։ Բավական է ասել, որ
ապրանքաշրջանառությունը սոցիալիստա-
կան լագերի երկրների միջև 1948 թվականից
մինչև 1952 թվականն ընկած ժամանակամի-
ջոցում աճել է ավելի քան երեք անգամ և
շարունակում է ծավալվել։ Անգամ, եթե հաշ-
վի առնենք անցած այդ ժամանակամիջոցում
կապիտալիստական պետությունների հետ
առևտրի կրճատումը, ապա Սովետական
Միության և ժողովրդական դեմոկրատիայի
երկրների արտաքին առևտրի շրջանառու-
թյունը կրկնապատկվել է։

Համաշխարհային դեմոկրատական շուկան
իր տրամադրության տակ ունի ընդարձակ
ռեսուրսներ, որը հնարավորություն է տա-
լիս ժողովրդական դեմոկրատիայի յուրա-
քանչյուր երկրին իր տնտեսական զարգաց-
ման համար նրանցում գտնել անհրաժեշտ



ամեն ինչ և արտահանել ավելի մեծ քանա-
կությամբ ապրանքներ մյուս եղբայրական
երկրներում վաճառքի համար։

Ժողովրդա-դեմոկրատական Լեհաստանը
նոր համաշխարհային շուկայում հանդես է
գալիս որպես քարածխի, կոքսի, ցինկի,
գլանվածքի, սև և գունավոր մետաղների,
տարբեր տեսակի մեքենաների, գյուղատըն-
տեսական արտադրության մի շարք կարե-
վորագույն ապրանքների մատակարարող։
Հունգարիան արտահանում է իր տրանսպոր-
տային մեքենաշինության արտադրան-
քի զգալի մասը՝ էլեկտրաուժային սարքա-
վորում, դազգահներ, բոքսիտներ, գործված-
քեղեն, գյուղատնտեսական ապրանքների
շատ տեսակներ։ Ռումինիան համաշխար-
հային նոր շուկային տալիս է նավթամթերք-
ներ, անտառանյութեր, շոգեքարշեր, պարեն։
Բուլղարիան արտահանում է տեխնիկական
կուլտուրաներ, գլխավորապես ծխախոտ,
կապարային, ցինկային հանքանյութ, ցե-
մենտ։ Ալբանիան եղբայրական երկրներին
տրամադրում է նավթ, բիտում, լեռնային
արդյունաբերության արտադրանք, գյուղա-
տնտեսական արտադրանքների մի քանի
տեսակներ։ Մոնղոլական Ժողովրդական



digitised by A.R.A.R.@

Ռեսպուբլիկան արտահանում է բուրդ, միս և անասնապահական այլ մթերքներ։

Ժողովրդական դեմոկրատիայի մի շարք երկրների արդյունաբերության զարգացման գործում նշանակալից դեր են խաղում Չեխոսլովակիայից, ինչպես նաև Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայից մատակարարվող սարքավորումները և մեքենաները։ Չեխոսլովակիայի մասնագետները, օրինակ, վերջին հինգ տարում Բուլղարիայում, Չեխոսլովակիայում պատրաստված սարքավորումներից մոնտաժեցին 15 էլեկտրակայան։ Այդ կայանների հզորությունը բարձր է մինչև 1944 թիվը Բուլղարիայում եղած բոլոր կայանների հզորությունից։

Չինաստանը համաշխարհային նոր շուկա է դուրս բերում լեռնահանքային արդյունաբերության արտադրանք, բուրդ, մետաքս, լոբազգիներ (սոյա, բակլա), գետնանկույզ, թեյ, արդյունաբերական ապրանքներ։

Սովետական Միությունը հենվելով իր խաղաղ էկոնոմիկայի անխորտակելի հզորության վրա, համաշխարհային նոր շուկայում գրավում է առաջատար դիրք։ Նա ժողովրդական դեմոկրատիայի երկրների արդյունաբերական ձեռնարկությունների համար մատակարարում է բազմատեսակ սար-



քավորում՝ տրակտորներ, գյուղատնտեսական մեքենաներ, ճանապարհային սարքավորում, պարարտանյութեր, հանքանյութ և այլ ապրանքներ։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներն իրենց արագ զարգացող արդյունաբերական կարևորագույն ճյուղերի համար մեքենաների կարևոր տեսակների, ինչպես նաև այնպիսի հումքի, ինչպիսին է երկաթի, խրոմի և մարգանեցի հանքանյութերը, բամբակի և շատ այլ ապրանքների պահանջները հիմնականում բավարարում են ՍՍՌՄ-ից ներմուծվող ապրանքների հաշվին։

Սովետական Միությունից ժողովրդական դեմոկրատիայի երկրներին մատակարարվող նոր կոնստրուկցիայի մեքենաները և սարքավորումները 1952 թվականին, 1948 թվականի համեմատությամբ աճել է 10 անգամ։ Ներկայումս Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների միջև առևտուրը հիմնվում է երկարատև տնտեսական համաձայնագրերի վրա։ Այդ համաձայնագրերը ժողովրդական դեմոկրատիայի երկրներին ապահովում են իրենց տնտեսական զարգացման համար անհրաժեշտ մեքենաների, հումքի և այլ ապրանքների ստացումը։



digitised by A.R.A.R.@

ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների առևտուրը հիմնված է փոխադարձ մատակարարման հավասարության վրա։ Հումքի և սարքավորումների փոխանակմամբ Սովետական Միությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներից ստանում է իր տնտեսության զարգացման համար օգտակար զանազան ապրանքներ։ Այդ ապրանքների թվին են պատկանում՝ մեքենայական տարբեր սարքավորումներ, հումքի մի շարք տեսակներ և ժողովրդական օգտագործման տարբեր տեսակի առարկաներ։

Համաձայն երկարամյա տնտեսական համաձայնագրերի, Սովետական Միությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներին մատակարարում է կատարելագործված սարքավորում, օգնում է կառուցելու գործարաններ և ֆաբրիկաններ, անվերադարձ տալիս է արտադրության պատենտներ, լիցենզիաներ (հատուկ թույլտվություն) և տեխնոլոգիա։ Լեհաստանում «Նովայա Գուտա» խոշոր մետալուրգիական կոմբինատը, Հունգարիայում Դանուբի մետալուրգիական կոմբինատը, Բուլղարիայում Ստալինի անվան քիմիական կոմբինատը և ժողովրդական դեմոկրատիայի երկրների շատ այլ ձեռնարկություններ ստեղծվում և արդեն ստեղծված են սովետա-



կան մասնագետների ակտիվ օգնությամբ և հագեցված են սովետական սարքավորումով։

ՍՍՌՄ-ը ժողովրդական Չինաստանին ցույց է տալիս էական օգնություն հիդրոտեխնիկական կառուցումների ստեղծման, ֆաբրիկաների, գործարանների, հանքերի, էլեկտրակայանների կառուցման և վերակառուցման գործում։ 1953 թվականի կեսերին Սովետական Միության կառավարության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարության միջև տեղի ունեցած բանակցությունները հիմք ստեղծեցին երկու մեծ ժողովուրդների տնտեսական համագործակցության հետագա ընդլայնման և ամրացման համար։ Սովետական կառավարությունը մինչև 1959 թվականի վերջը Ժողովրդական Չինաստանին ցույց կտա տնտեսական օգնություն 141 խոշոր օբյեկտների, այդ թվում 91 նոր ձեռնարկության և ներկայումս կառուցվող և վերակառուցվող 50 ձեռնարկությունների կառուցման և ընդարձակման գործում։ Դրանց թվում են մետալուրգիական կոմբինատները, գունավոր մետաղների արտադրության գործարանները, քարածխի հանքերը, նավթազտման ձեռնար-



4223
53
ՀԱՅՐԱՑԻ ...
digitised by A.R.A.R.@

կություններր, մեքենաշինական, տրակտո-
րային և ավտոմեքենաշինական գործարան-
ներ և այլն։ Այս օբյեկտների շարք մտնելը
Ժողովրդական Չինաստանին հնարավորու-
թյուն կտա զգալի չափով բարձրացնել ար-
դյունաբերական արտադրանքի մակարդա-
կը, ինդուստրացման կայուն հիմք ստեղծել։

Սարքավորումների մատակարարման և այլ
օգնությունների ծախսերի դիմաց Սովետա-
կան Միությունը Չինաստանից կստանա մեր
տնտեսության համար անհրաժեշտ հումույթ
և արդյունաբերական ապրանքներ, մասնա-
վորապես գունավոր մետաղներ, բուրդ, ջութ,
բրինձ, խոզի միս, ծխախոտ։

Սոցիալիստական լագերի երկրների միջև
հաջողությամբ ծավալվում է նաև գիտա-
տեխնիկական համագործակցությունը։ Վեր-
ջերս սովետական մամուլում հրապարակված
նյութերը պատկերացում են տալիս այն մա-
սին, թե Սովետական Միությունը ժողովրդա-
կան դեմոկրատիայի երկրներին որքան շատ
գործարանի նախագծեր, գծագրություններ,
ռեցեպտներ և տեխնիկական այլ փաստա-
թղթեր է մատակարարում, որը օգնում է այդ
երկրների ժողովուրդներին ավելի արագ
հասնելու առաջավոր գիտության ու տեխնի-
կայի մակարդակին։ Իրենց հերթին ժողո-



վրրդական դեմոկրատիայի երկրները Սովե-
տական Միությանը տալիս են փաստաթղթեր
արտադրանքի առանձին տեսակների արտա-
դրության համար։

Աշխարհում հաղթանակած սոցիալիզմի ա-
ռաջին երկրի տնտեսական շինարարության
փորձը ժողովրդական դեմոկրատիայի եր-
կրրներն է հասնում նաև բազմաթիվ այլ ու-
ղիներով։ Այդ երկրների աշխատավորության
դելեգացիաներն այցելում են սովետական
գործարանները, ֆաբրիկաները, կոլտնտեսու-
թյունները։ Սովետական գիտնականները,
արտադրության առաջավորներն ու նորա-
րարները ժողովրդական դեմոկրատիայի եր-
կրրների հաճախակի հյուրերն են, որտեղ
նրանք տեղում օգնում են այդ երկրների
բանվոր դասակարգին՝ յուրացնելու աշխա-
տանքի առաջավոր մեթոդները։

Սովետական Միությունում բարձրագույն
կրթություն են ստանում ժողովրդական դե-
մոկրատիայի երկրներից եկած հազարավոր
պատանիներ ու աղջիկներ։

Համախմբված իրենց կոմունիստական և
բանվորական պարտիաների շուրջը, ժողո-
վրրդական դեմոկրատիայի երկրների աշխա-
տավորները աչքի լույսի պես պահպա-
նում և ամրապնդում են իրենց բարեկա-



digitised by A.R.A.R.@

մությունը Սովետական Միության հետ։ Նրանք գիտեն, որ այդ բարեկամությունը իրենց երջանիկ, ազատ կյանքի երաշխիքն է։

Ինչ վերաբերում է կապիտալիստական երկրներին, ապա նրանց տնտեսական դժվարությունների աճմանը զուգընթաց առավել ևս ակնհայտ է դառնում, թե իրենց համար ինչպիսի կործանարար հետևանքներ է ունենում նորմալ գործարար կապերի խզումը դեմոկրատական լագերի պետությունների հետ։

---

# ԿԱՐՏՈՖԻԼԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(Գյուղատնտես)

Կարտոֆիլը մեծ նշանակություն ունի ժողովրդական տնտեսության մեջ, որը ոչ միայն արժեքավոր սննդամթերք է, այլև արդյունաբերության համար արժեքավոր հումք՝ սպիրտ, օսլա և այլ նյութեր ստանալու համար։ Մեծ է կարտոֆիլի նշանակությունը անասնաբուծության զարգացման գործում, անասունների մթերատվությունը, հատկապես կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը կոնկրետ միջոցառումներ նշեց կարտոֆիլի բերքատվության բարձրացման ուղղությամբ՝ պահանջելով լայնորեն արմատավորել կարտոֆիլի տնկման քառակուսի-բնային եղանակը և առավելագույն չափով մեքենայացնել կարտոֆիլի ցանքի ու բերքահավաքի աշխատանքները։

Կարտոֆիլի մշակությունը, բերքահավաքը մեքենայացնելու համար առաջին հերթին պետք է կիրառել նրա տնկման քառակուսի-բնային պրոգրեսիվ եղանակը։ Այդ եղանակի էությունն այն է, որ կարտոֆիլի պալարները տնկում են բներով, ըստ 70—70 սմ. հեռավորության քառակուսիների։ Պալարների նման տեղադրումը լավ պայմաններ է ստեղծում միջշարքային տարածությունների մեքենայական մշակման համար երկու ուղղությամբ՝ դաշտերի երկարությամբ և լայնությամբ ու կարտոֆիլի բերքահավաքի աշխատանքների մեքենայացման համար՝ կարտոֆիլահավաք մեքենաներով։ Այդ եղանակի շնորհիվ հնարավոր է մեկ հեկտարի վրա 21—22 հազար բների մեջ տնկել 42—45 հազար պալար, յուրաքանչյուր բնի մեջ տեղավորելով երկուական կարտոֆիլ։ Կարտոֆիլին հատկացվող հողամասը աշնանից հերկվում է 25—30 սմ. խորությամբ, նախապես այն պարարտացնելով գոմաղբով և որից հետո յուրաքանչյուր բնում լցնում են 500—750 գրամ փտած գոմաղբ, կամ մեկ հեկտարին 10—15 տոննա։ Գոմաղբը լավ խառնում են հողի հետ և 10—15 սմ. խորությամբ բնում տնկում 2 կարտոֆիլ. տնկման համար օգ-



տագործում են միանդամայն առողջ, 50—80 գ. և ավելի քաշ ունեցող պալարներ։

Կարտոֆիլի քառակուսի-բնային ցանքը կատարում են «ՍԿԳ—4» հատուկ մեքենայի միջոցով, որը հնարավորություն է տալիս աշխատանքի նվազագույն ծախսումով մեքենայացնել նաև կարտոֆիլի ցանքի մշակությունը, ինչպես, օրինակ, մոլախոտերի ոչնչացումը, փխրեցումը և բուկլիցը, իսկ մշակության բարելավումը բարձր բերք ստանալու կարևոր պայմանն է։

Քառակուսի-բնային տնկումը հնարավորություն է տալիս մեքենայական ուժով թփերի շուրջ հողը խորը փխրեցնել, իսկ կարտոֆիլը սովորական շարքով տնկելու դեպքում, այդ նույն աշխատանքը շատ բանվորական ձեռքեր է խլում, քանի որ հողի փխրեցումը կատարվում է ձեռքով, բրիչներով։ Օրինակ, մեքենայական տընկման, մշակման և բերքահավաքի դեպքում կարտոֆիլի ցանքի յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսվում է 5—6 բանվորական օր, իսկ նույն աշխատանքները ձեռքով կատարելիս՝ 53 բանվորական օր։

Վերջին տարիներս կարտոֆիլի քառակուսի-բնային տնկման եղանակը կոլտնտեսությունները ավելի լայն չափերով են գործադ-

րում։ Մոսկվայի մարզի առաջավոր կոլտնտեսությունները այդ եղանակով 1 հեկտար տնկելիս տնտեսում են 10—20 բանվորական օր և կարտոֆիլի բերքատվությունը բարձրացրել են 20—25 տոկոսով։ Կիևի մարզի Չեռնոբիլսկի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունում հեկտարից ստացվել է կարտոֆիլի 607 ցենտներ բերք։

Սովետական Միության առաջավոր կոլտնտեսությունների օրինակով Հայաստանի նախալեռնային և լեռնային շրջանների մի շարք կոլտնտեսություններ կարտոֆիլի բերքատվության բարձրացման գործում որոշակի հաջողությունների են հասել։ Սիստեմատիկաբար կարտոֆիլի առատ բերք են ստանում Ստեփանավանի, Նոր-Բայազետի, Շամշադինի, Կիրովականի և մի քանի այլ շրջանների կոլտնտեսությունները։ Ստեփանավանի շրջանի Կուրթան, Նորաշեն, Պրիվոլնի, Շամշադինի շրջանի Չինարի, Վերին Կարմիր Աղբյուր, Կիրովականի շրջանի Լերմոնտով, Մեղրուտ և մի քանի այլ գյուղերի կոլտնտեսություններ պլանով նախատեսված 120—125 ցենտների փոխարեն հեկտարից ստացել են 140—200 ցենտներ։

Մարտունու շրջանի Ջոլաքար գյուղի կոլտնտեսության օղակավար Գևորգ Վարդանյանի օղակը իրեն ամրացված 7 հեկ-



տար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 200 ցենտներ լավորակ կարտոֆիլ։

Բարձր բերք է ստացել «Կալինինոյի» Ստալինի անվան կոլտնտեսությունը, որտեղ 1842 հեկտար կարտոֆիլի միջին բերքատվությունը կազմում է 120—150 ցենտներ։ Այդ Կոլտնտեսության Տրիգուբովի բրիգադան կարտոֆիլի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 152 ցենտներ բերք, իսկ առանձին հողամասերից՝ մինչև 280 ցենտներ բերք։

Կատարելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի ծրագրային որոշումը, ռեսպուբլիկայում մի շարք գործնական միջոցառումներ է մշակվել կարտոֆիլի արտադրությունն ավելացնելու համար։

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության և մթերումների մինիստրության կողմից արդեն շրջաններին իջեցված է պլան քառակուսի-բնային եղանակով ցանք կատարելու մասին։ Կարտոֆիլի արտադրության մեջ լայն չափով օգտագործվելու են նորագույն մեքենաներ։ 1954 թվականի ընթացքում ստացվելու են մեծ թվով «ՍԿԳ—4» սիստեմի կարտոֆիլ տնկող մեքենաներ, կարտոֆիլ հավաքող կոմբայն և այլ տեսակի մեքենաներ։

# ՖԱԲՐԻԿԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿԻ ԱՐՏԱԴՐԱՆՔ ԹՈՂԱՐԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Ա. ՇԱՀՄՈՒՐԱԴՅԱՆ

Երևանի Կլարա Ցետկինի անվան
կարի ֆաբրիկայի դիրեկտոր

*Կատարելով Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումները, ֆաբրիկայի կոլեկտիվը սիստեմատիկաբար բարելավում է արտադրանքի որակը։ Բանվորներն ու բանվորուհիները, ինժեներատեխնիկական աշխատողները ջանք չեն խնայում աշխատավորությանն ավելի լավորակ և ճաշակով հագուստեղեն տալու համար։*

*Ֆաբրիկայի կոլեկտիվը այս տարվա 10 ամսում պլանով նախատեսված 93,6 տոկոսի փոխարեն առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրեց 94,7 տոկոսի։ Նույն ժամանակաշրջանում գործարանը երկրին տվեց մեկ միլիոն 550 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։*

*Արտադրանքի որակը բարձրացնելու գոր-*



*ծում ավելի լուրջ հաջողություններ են ձեռք բերել առանձին ագրեգատներ։ Այսպես, օրինակ, № 1 կարող ցեխի №1 ագրեգատի գրեթե բոլոր բանվորներն ու բանվորուհիները, որոնց թիվը հասնում է 75 հոգու, սիստեմատիկաբար տալիս են առաջին կարգի արտադրանք։ Նրանք հունվար ամսից մինչև հոկտեմբեր ամիսը առաջին կարգի արտադրանքի տոկոսը հասցրել են 99,5-ի, նախատեսված 94 տոկոսի փոխարեն։ Արտադրանքի որակը բարձրացնելու գործում նույնպիսի հաջողությունների են հասել նաև ֆաբրիկայի № 1 կարող ցեխի № 3, № 8 ագրեգատների, № 2 կարող ցեխի № 11, № 12 ագրեգատների կոլեկտիվները։ Նշված ագրեգատների կոլեկտիվները սոցիալիստական մրցության մեջ ճանաչվել են հաղթող և նրանց մինիստրության կողմից շնորհվել է «Գերազանց որակի ագրեգատ»-ի կոչում։*

*Այժմ ֆաբրիկայում ոչ միայն առանձին ագրեգատներ, այլև ամբողջ ցեխեր ձգտում են թողարկել միայն գերազանց որակի արտադրանք։*

*Ձեռք բերված այս հաջողություններն արդյունք են այն բանի, որ ֆաբրիկայում լայնորեն արմատավորվում են աշխատանքի լավագույն մեթոդներ ու ձևեր։*

Որպեսզի թողարկվող արտադրանքի որակը սիստեմատիկաբար բարելավվի՝ ֆաբրիկայի ագրեգատներում անց է կացվում յուրաքանչյուր բանվորի կատարած արտադրական օպերացիայի ինքնաստուգում։ Դա հնարավորություն է տալիս ժամանակին կանխել անորակ աշխատանքը։ Բացի այդ, ցեխերում և ագրեգատներում նշանակված են հասարակական հսկիչներ, որոնք 5—6 արտադրական օպերացիաներից հետո ստուգում են, թե արդյոք ճիշտ են կատարված արտադրական պրոցեսները, չկան խախտումներ կամ խոտանի դեպքեր։

Աշխատանքի նման մեթոդը թույլ է տալիս տեղն ու տեղը կանխել անորակ արտադրանքի թողարկումը։

Արտադրանքի որակը բարձրացնելու նպատակով մենք կիրառում ենք մի այլ միջոց. դա կրկնակի խոտանման պրակտիկան է, երբ պատրաստի հագուստեղենը պահեստում, նախքան առևտրական կազմակերպություններին հանձնելը, ենթարկվում է նորից ստուգման։ Խոտան արտադրանք հայտնաբերելիս կազմվում է հատուկ ակտ, ուր նշվում է, թե որ հագուստի որ մասն է խոտան, այն ետ է վերադարձվում՝ նշված թերությունները վերացնելու համար։



Արտադրանքի որակը բարձրացնելու նպատակով, բացի կրկնակի ստուգումներից, մենք ընդօրինակում ենք Մոսկվայի նույնատիպ առաջավոր գործարաններին, մեզ մոտ արմատավորելով նրանց աշխատանքի դրական փորձը։ Արդեն մեր ֆաբրիկայում Մոսկվայի կարի ձեռնարկությունների օրինակով սահմանված է ձևափոխման (պերեդելկա) տալոններ, որտեղ հաշվառում է կատարվում արտադրանքի որակի մասին, թե ով, արտադրական որ օպերացիայում ինչ սխալ է կատարել։ Եթե կարի որևէ պրոցես ճիշտ չի կատարվում և այն չեն նկատում հսկիչները, որպեսզի կանխեն խոտանը, ապա արտադրական օպերացիայի վերջում ձևափոխման տալոնը ժամանակին ցույց է տալիս կատարված խոտանը, որովհետև այնտեղ այդ մասին կա մանրամասն հաշվառում և հնարավոր է լինում անմիջապես կանխել խոտան արտադրանքը։

Աշխատանքի այդ մեթոդը խիստ նպաստավոր է գերազանց որակի արտադրանք թողարկելու համար։ Յուրաքանչյուր բանվոր-բանվորուհի ձգտում է որակյալ աշխատանք կատարել, աչալուրջ հետևում է, որպեսզի արտադրական պրոցեսում խախտումներ չլինեն։

Արտադրանքի որակի բարձրացման գործում խոշոր նշանակություն ունեն դեպի երկրի առաջավոր ձեռնարկությունները կազմակերպվող արտադրական էքսկուրսիաները։ Մեր ֆաբրիկայից ամեն տարի նման էքսկուրսիաների մասնակցում են 15 հոգի՝ բանվորներ, բանվորուհիներ, տեխնոլոգներ, ցեխերի պետեր և այլն։ Անցյալ տարի արտադրական էքսկուրսիա կազմակերպվեց դեպի Մոսկվա, որտեղ էքսկուրսանտները հանգամանորեն ուսումնասիրեցին կարի ֆաբրիկաների աշխատանքի առաջավոր փորձը և այն տեղափոխեցին մեզ մոտ։ Ուսումնասիրվեց և մեզ մոտ արմատավորվեց հատկապես մանր մեխանիզացիայի միջոցով արտադրանքի որակը բարձրացնելու արժեքավոր փորձը։

Գերազանց որակի արտադրանք տալու համար մեծ նշանակություն ունի բանվորների սիստեմատիկ տեխնիկական ուսուցումը, այն, որ յուրաքանչյուր բանվոր լավ տիրապետի տեխնիկային, կարողանա արդյունավետ օգտագործել ժամանակակից մեքենաներն ու գործիքները, տեխնիկական մյուս սարքավորումները։

Ֆաբրիկայում կազմակերպված է տեխուսուցման տարբեր տիպի 6 խմբակ, որտեղ սովորում են և տեխնիկապես որակավորվում



ավելի քան 150 հոգի։ Միաժամանակ 80 հոգի սովորել են և ավարտել կտորների ճիշտ խուտանման կարճատև դասընթացները։

Թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու գործում խոշոր նշանակություն ունի նաև նյութական և հասարակական խրախուսանքը։ Մեզ մոտ լայնորեն կիրառվում է պրեմիալ վարձատրության սիստեմը, երբ իրենց արտադրական պլանները գերակատարող բանվորներն ու բանվորուհիները ստանում են լրացուցիչ, պրոգրեսիվ վարձատրություն։ Այդ վարձատրությունը կազմում է նրանց աշխատավարձի 25 տոկոսը։

Բացի այդ, առաջավոր շատ աշխատողներ բարձրացվում են պատվոտախտակի կամ նրանց տրվում է պատվոգիր։ Վերջերս գերազանց որակի արտադրանք տալու համար կարող և ձևող բանվորներից ու բանվորուհիներից 50 հոգի ստացան պատվոգիր։

Այժմ գործարանում բոլոր բանվոր-բանվորուհիները պայքարում են տարեկան արտադրական պլանները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։

Գործարանի կոլեկտիվը ջանք չի խնայի և պատվով կկատարի իր առջև դրված խնդիրը, աշխատավորներին կտա ավելի լավ որակի, գեղեցիկ և ճաշակով հագուստեղեն։

# ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ

Երևանի Ավտոդողերի գործարանի ագիտատորներ Ա. Հարությունյանը, Վ. Ղահրամանյանը, Ա. Ջրբաշյանը, Հ. Եսայանը, Ա. Փիրենյանը և Ս. Դանիելյանը դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով՝ «Ի՞նչպես են զարգանում իրադարձությունները Եգիպտոսում»: Տպագրում ենք պատասխան այդ հարցին:

*Հետպատերազմյան շրջանում միլիոնավոր չափեր է ընդունել գաղութների և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։ Ազգային անկախության համար անգլո-ամերիկյան իմպերիալիստների և նրանց գործակալների դեմ ժողովրդական մասսաների սուր պայքարի ասպարեզ է դարձել նաև Եգիպտոսը։*

*Եգիպտոսի ժողովուրդը երբեք չի հաշտվել իմպերիալիզմի լծի հետ։ Նա բազմիցս հանդես է եկել գաղութային ռեժիմի դեմ։ Եգիպտոսի աշխատավորները պահանջում են անգլիական իմպերիալիստներից անվերա-*



*պահորեն էվակուացիայի ենթարկել անգլիական զորքերը Սուեզի ջրանցքի գոտուց։*

*Անգլո-եգիպտական բանակցությունները այդ կոնֆլիկտի լուծման համար շարունակվում են արդեն երկար ժամանակ։ Բայց այդ բանակցություններում Անգլիայի բռնած անհաշտ դիրքը, որն ընդհանուր զայրույթ է առաջացնում բոլոր ժողովուրդների մեջ, մեծ խոչընդոտ է հանդիսանում կոնֆլիկտի հաջող լուծման գործում։*

*1953 թվականի ապրիլի 28-ին, չափազանց բարդ իրադրության պայմաններում, նորից սկսվեցին անգլո-եգիպտական բանակցությունները։ Եգիպտոսը պնդում էր, որ անգլիական զորքերը անվերապահորեն էվակուացվեն և չէր ցանկանում մտնել այսպես կոչված «համատեղ պաշտպանության» սիստեմի մեջ։ Մյուս կողմից բանակցությունների վարագույրի հետևում կատաղի պայքար ծավալվեց Անգլիայի և Ամերիկայի միջև հսկայական տնտեսական և ռազմա-ստրատեգիական նշանակություն ունեցող Սուեզի ջրանցքի վերահսկողության համար։ Այդ հանգամանքներն էլ հենց կանխորոշեցին բանակցությունների ձախողումը, որոնք ընդհատվեցին մայիսի 6-ին։*

*Ամերիկյան իմպերիալիստները կրկնակի*

նպատակ են հետապնդում Եգիպտոսում։ Նրանք մի կողմից ձգտում են թուլացնել Անգլիային, քայլ առ քայլ դուրս մղել նրան Մերձավոր և Միջին Արևելքի հանգուցային դիրքերից և գրավել նրա տեղը, մյուս կողմից նրանք աշխատում են խափանել Եգիպտոսում ծավալվող ազգային-ազատագրական շարժումը։

Վերջերս անգլո-եգիպտական հարաբերություններն էլ ավելի են սրվել։ Անգլիական զորքերը փակել են այն բոլոր ճանապարհները, որ Իսմայիլիայից (Սուեզի ջրանցքի գոտու վարչական կենտրոնը) տանում է դեպի Պորտ-Սայիդ, Կահիրե և Սուեզ։ Լարված իրադրություն է ստեղծվել Սուեզի ջրանցքի ամբողջ գոտում, որտեղ անգլիացիները արտակարգ դրություն են հայտարարել։ Եգիպտական կառավարությունը հուլիսի 15-ին պահանջեց վերացնել այդ բոլոր ռազմական սահմանափակումները, որ մտցրել են անգլիացիները Իսմայիլիայում և Սուեզի ջրանցքի ամբողջ գոտում։

Սակայն բրիտանական գաղութարարները Սուեզի ջրանցքի գոտում պահում են 70 հազարից ավելի զորք։ Անգլիական իմպերիալիստները սպառնում են եգիպտա-



կան ժողովրդին՝ ընդմիշտ պահպանել այդ դրությունը», այսինքն ընդմիշտ օկուպացիայի ենթարկել եգիպտական տերիտորիան։

Վերջին մի քանի ամիսների ընթացքում Անգլիայի և Եգիպտոսի կառավարությունների միջև տեղի են ունենում այսպես կոչված ոչ պաշտոնական բանակցություններ՝ Սուեզի ջրանցքի գոտու հարցի շուրջը, որոնք մինչև այժմ չեն հասցրել անգլո-եգիպտական կոնֆլիկտի կարգավորմանը։

Եգիպտոսի ազգային ղեկավարության մինիստր Սալախ Սալեմը հոկտեմբերի 10-ին հրապարակեց դիմում, որից հետևում է, որ Անգլիան բոլորովին չի մտադրում Սուեզի ջրանցքի գոտուց իր զորքերի էվակուացիայի մասին։

Բրիտանական իմպերիալիստները պնդում են, որ Սուեզի ջրանցքի գոտուց անգլիական զորքերը դուրս բերելու վերաբերյալ համաձայնության դեպքում, իրենց համար պետք է պահպանվի իրավունք՝ որ անգլիական զորքերը նորից մտնեն Եգիպտոս, եթե տեղի ունենա արաբական երկրների վրա հարձակում։

Ինչպես տեսնում ենք, անգլիական դիվա-

*նագիտությունը ամեն կերպ ձգտում է պահպանել օկուպացիոն զորքերը Եգիպտոսում։*

*Պետք է նշել, որ եգիպտական իշխանությունները, հրաժարվելով ԱՄՆ-ի «օգնությունից», որը տրվում է այսպես կոչված «անվտանգության փոխադարձ ապահովման օրենքի» հիման վրա, միաժամանակ ուժեղացրել են ռեպրեսիաները դեմոկրատական գործիչների դեմ։*

*Եգիպտական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը ծավալվում է խաղաղության կողմնակիցների շարժման պայմաններում։ Եգիպտական ժողովուրդը չի ցանկանում մասնակցել Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ իմպերիալիստների կողմից նախապատրաստվող պատերազմին։*

*Սովետական Միությունը միշտ մեծ համակրանքով է վերաբերվել Եգիպտոսի աշխատավորների արդարացի, ազատագրական պայքարին։ 1951 թվականին, երբ անգլո-եգիպտական հարաբերությունները խիստ սրվեցին, Սովետական կառավարությունը նոյեմբերի 21-ին հայտարարեց, որ անհրաժեշտ է օտարերկրյա զորքերը դուրս բերել Մերձավոր Արևելքից։*



*Օթե իմպերիալիստական տերությունները սովոր են այդ երկրները դիտել որպես գաղութ, ապա Սովետական Միությունը մըշտապես վարում է թե մեծ և թե փոքր ժողովուրդների արդարացի ազգային պահանջները պաշտպանելու քաղաքականություն։ Սովետական կառավարության քաղաքականությունը համապատասխանում է ընդհանուր խաղաղությունը պահպանելու շահերին և վայելում է ամբողջ պրոգրեսիվ մարդկության օժանդակությունը։*

Ս. ՊԱՊՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

*(Թվեր-փաստեր)*

✪ *Սոցիալիստական կուլտուրայի հետագա վերելքն ապահովելու նպատակով Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեծագույն ուշադրություն են դարձնում ժողովրդական կրթության վրա։*

*Մինչև 1955 թվականի վերջը նախատեսվում է ավարտել յոթնամյա կրթությունից ընդհանուր միջնակարգ կրթության (տասնամյա) անցնելը ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ռեսպուբլիկական ենթակայության քաղաքներում, մարզային, երկրամասային և արդյունաբերական խոշոր կենտրոններում, ինչպես նաև պայմաններ նախապատրաստել հաջորդ հնգամյակում մնացած քաղաքներում և գյուղական վայրերում ընդհանուր միջնակարգ կրթությունը (տասնամյա) լրիվին իրականացնելու համար։*

✪ *1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, քաղաքային դպրոցների 8—10 դասարաններում սովորողների թիվը կավելանա 4 անգամ և գյուղական միջնակարգ դպրոցներում՝ 4,5 անգամ։ Նա-*



*խատեսվում է քաղաքային և գյուղական դպրոցների շինարարությունը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 70 տոկոսով։*

✪ *Ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության հետագա զարգացման խնդիրներին համապատասխան՝ հնգամյակի ընթացքում բոլոր տեսակի բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ավարտող մասնագետների թիվն ավելանալու է 30—35 տոկոսով, այդ թվում բարձրագույն ուսումնական հաստատությունների ավարտողների թիվը՝ ավելի քան 50 տոկոսով։ Արդյունաբերության կարևորագույն ճյուղերի, շինարարության և գյուղատնտեսության համար բարձրագույն ուսումնական հաստատությունների կողմից տրվող մասնագետների թիվը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացվելու է մոտավորապես երկու անգամ։*

✪ *ՍՍՌՄ-ում վիթխարի չափերով ավելանում են լուսավորության համար կատարվող ծախսերը։ 1940 թվականին այդ ծախսերը կազմում էին 22 միլիարդ 500 միլիոն ռուբլի, իսկ 1951 թվականին այն հասավ 57 միլիարդ 300 միլիոն ռուբլու։ Սովորողների թիվը, 1940 թվականի համեմատությամբ, 1951 թվականին ավելացավ 8 միլիոն մարդով։ Այժմ ՍՍՌՄ-ում սովորում են ավելի քան 57 միլիոն հոգի։*

✪ *1953 թվականին ՍՍՌՄ-ում տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում սովորողների թի-*

վը աճել է 900 հազարով, ընդ որում միջնակարգ դպրոցն ավարտողների թիվը 1950 թվականի համեմատությամբ, ավելանալու է երկու անգամ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թիվը 1953 թվականին աճել է մինչև 1 միլիոն 527 հազարով և տեխնիկումներում՝ մինչև 1 միլիոն 548 հազարով։

ՍՍՌՄ-ը աշխարհի միակ երկիրն է, որտեղ բոլոր քաղաքացիներն ունեն կրթության իրավունք, ուր իրականացված է պարտադիր ուսուցումը և ամեն տարի վիթխարի գումար է ծախսվում ժողովրդական կրթության համար։ Միայն լուսավորության և կուլտուրայի գծով այս տարի կատարվելու է 62.089.527 հազար ռուբլի ծախս։

Ժողովրդական կրթության ուղղությամբ վիթխարի աշխատանք է կատարված նաև մեր ռեսպուբլիկայում։ Հաջողությամբ կենսագործվում է պարտիայի և կառավարության որոշումը պարտադիր ուսուցման վերաբերյալ։ Ռեսպուբլիկայի գյուղերում իրականացված է պարտադիր 7-ամյա ուսուցումը, իսկ քաղաքներում իրականացվում է միջնակարգ ուսուցումը։

Այժմ, ռեսպուբլիկայում գործում է 1200 դպրոց, որտեղ սովորում են մոտ 300 հազար աշակերտ և աշխատում են ավելի քան 16 հազար ուսուցիչ։

Ռեսպուբլիկայում լավագույն պայմաններ են ստեղծված, առանց արտադրությունից կտրվելու, բան-



վոր, ծառայող և կոլտնտեսական երիտասարդների ուսուցումը կազմակերպելու համար։ Այժմ գյուղերում, բանվորական ավաններում և քաղաքներում առանց արտադրությունից կտրվելու սովորում են մոտ 15 հազար երիտասարդներ։

Ամեն տարի խոշոր գումար է ծախսվում մեր ռեսպուբլիկայում դպրոցական շենքեր կառուցելու համար։ Միայն այս տարի դպրոցական շինարարության վրա ծախսվել է 14 միլիոն ռուբլի, իսկ անցյալ տարի ծախսվել էր 10 միլիոն ռուբլի։ Երևանում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 7, իսկ շրջաններում՝ 8 նոր դպրոցական շենքեր։ Այս տարի դպրոցական նոր շենքեր են կառուցվել Լենինականում, Կիրովականում, Ղափանում, Իջևանում, Ղուկասյանում և մի շարք այլ շրջաններում։

Խոշոր գումար է ծախսվում նաև դպրոցական գույք ձեռք բերելու համար։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի դպրոցներն ստացան 1 միլիոն 500 հազար ռուբլու դպրոցական գույք, իսկ այս տարի՝ ավելի շատ։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 3-րդ Սեսիայի որոշմամբ այս տարի ռեսպուբլիկայում միայն լուսավորության և կուլտուրական ձեռնարկումների վրա ծախսվելու է 484 միլիոն 972 հազար ռուբլի։

Ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք է կատարված դպրոցներում դասավանդման որա՛կը բարձրացնելու ուղղությամբ։ Ուսուցիչների կատարելա-

փորձման ինստիտուտի դասընթացներում վերջին երկու տարվա ընթացքում վերապատրաստվել են հայոց լեզվի, ռուսաց լեզվի, ֆիզիկո-մաթեմատիկական և այլ առարկաների 5482 ուսուցիչ, ինչպես նաև ժողովրդական կրթության բաժինների ու դպրոցների ղեկավար աշխատողներ։ Միայն անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներն ստացան ռուսաց լեզվի 486 ուսուցիչ բարձրագույն և թերի բարձրագույն կրթությամբ։ Այդ նույն ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի 15 հազար 987 ուսուցիչներից 7 հազար 133 մարդ արդեն ունեին բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։

Խոշոր աշխատանք է կատարված միջնակարգ դպրոցների համար դասագրքեր կազմելու և հրատարակելու ուղղությամբ։ Միայն անցյալ ուսումնական տարում հրատարակվել է 83 անուն դասագիրք՝ 2 միլիոն 200 հազար օրինակ տիրաժով։

Այս ուսումնական տարվա համար հրատարակվել է 80 անուն դասագիրք՝ 1 միլիոն 842 հազար օրինակ տիրաժով։

Նախասովետական Հայաստանում գոյություն չունեին և ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, գիտահետազոտական ինստիտուտ և ընդհանրապես որևէ գիտական հիմնարկ։

Այժմ, Սովետական Հայաստանում կա 17 բարձրագույն ուսումնական հաստատություն, Գիտությունների ակադեմիա իր բազմաթիվ գիտա-հետազոտական ինս-



տիտուտներով ու կայաններով։ Միայն ռեսպուբլիկայի 12 ստացիոնար ԲՈՒՀ-երում սովորում են ավելի քան 13.000 ուսանող, անցյալ տարվա 11.832 մարդու դիմաց, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 7 հազար 189 մարդ։ Ռեսպուբլիկայի ԲՈՒՀ-երը ամեն տարի երկրին տալիս են հարյուրավոր բարձրորակ մասնագետներ։ Միայն վերջին երկու տարվա ընթացքում ԲՈՒՀ-երը երկրին տվեցին 1925 մանկավարժ, 428 գյուղատնտես, 344 անասնաբույժ և զոոտեխնիկ, 583 ինժեներ և այլ մասնագետներ։

Ռեսպուբլիկայի ԲՈՒՀ-երում դասավանդում են 1343 մարդ, որից 114-ը գիտությունների դոկտոր-պրոֆեսորներ են, 536-ը դոցենտներ և գիտությունների թեկնածուներ։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում բարձր զարգացման է հասել գիտությունը։ Սովետական առաջավոր գիտության զարգացման գործում, ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաների, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիան լուրջ դեր է խաղում։ Ակադեմիան իր սիստեմում ունի ավելի քան 30 գիտա-հետազոտական հիմնարկներ՝ ինստիտուտներ, փորձակայաններ և այլն։

digitised by A.R.A.R.@

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

**Բիզնես**— *(բառացի նշանակում է գործ, գործարք, կոմերցիոն գործունեություն. բիզնեսմեն՝ կոմերսանտ, գործարքներ սարքող)։ Այս տերմինը տարածված է Անգլիայի և հատկապես ԱՄՆ-ի կապիտալիստների շրջանում։ Կապիտալիստները և նրանց սպասավորները. բուրժուական տնտեսագետներն ու քաղաքագետները աշխատավոր մասսաներին բթացնելու-մոլորեցնելու նպատակով տարածում են այն վնասակար պատրանքները, թե ամեն ոք, մասնակցելով այս կամ այն բիզնեսի, կարող է ապագայում դառնալ կապիտալիստ և նույնիսկ միլիոնատեր։ Իմպերիալիստական Ամերիկայում մոնոպոլիստական կապիտալի համար շահութաբեր բիզնեսի է վերածվել ոչ միայն տնտեսական կյանքը, այլև բժշկական օգնությունը, որը շատ թանկ է և անմատչելի երկրի բնակչության ճնշող մեծամասնության համար, այլև կրթությունը, որից զրկված են տասնյակ միլիոնավոր աշխատավորներ, դեգրադացիայի ենթարկվող գիտությունը և արվեստը։ Շահութաբեր բիզնես են հանդիսանում կոնգրեսի և նահանգների կառավարման օրգանների ընտրությունները, ինչպես նաև պրեզիդենտի ընտրությունները, որոնց ժամանակ գնվում և վաճառվում են ընտրողների ձայները, մոնոպոլիաները պետական ապարատը լցնում են*



*իրենց դրածոներով և այլն։ Կապիտալիստական մոնոպոլիաները բիզնես են սարքում պատերազմից, որի ընթացքում կապիտալներ են դիզում՝ թանկ գներով պետությանը սպառազինություն և հանդերձանք վաճառելով, միաժամանակ հսկայական շահույթներ են կուտակում հակառակորդի հետ առևտուր անելով։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ամերիկյան մոնոպոլիաները «բիզնես սարքեցին» և դիզեցին հսկայական շահույթներ, որոնք ձեռք են բերվել «մարդկային արյան գնով, քաղաքների կործանման գնով, միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց իրենց կերակրողներից զրկելու, այրի ու որբ դարձնելու գնով» (Վիշինսկի)։*

**Պլացդարմ**— *1) Ինժեներական տեսակետից հատուկ սարքավորված (ամրացված) և զորքերով պահպանված մի շրջան, որի պաշտպանության տակ զորքի գլխավոր ուժերը կարող են կենտրոնացվել և պատրաստվել՝ հարձակման անցնելու համար.*

*2) Հակառակորդների ամրացված գոտիների միջև ինժեներական տեսակետից պատրաստված հատուկ տեղանք, որը ելման դիրք է հանդիսանում գրոհող զորքերի համար.*

*3) Գետի հակառակ ափի այն տեղանքը, որը գրավել են գետն անցած առաջավոր զորամասերը։ Պլացդարմը ելման դիրք է հանդիսանում գլխավոր ուժերի հարձակումը զարգացնելու և գետանցումն ապահովելու համար։*



digitised by A.R.A.R.@

4) Հայն խմաստով՝ պլացդարմը մի ամբողջ մարզ է կամ երկիր, որտեղից հարմար է ներխուժել թշնամի պետության տերիտորիան։

Եվրոպայում և Ասիայում ագրեսիվ պլանների կենսագործման նպատակով ամերիկյան իմպերիալիստները իրենց կողմից օկուպացված Արևմտյան Գերմանիան և Ճապոնիան ռազմական պլացդարմ են դարձնում։ Արևմտյան Գերմանիայում ավելի քան 400 ձեռնարկություններ արդեն զբաղված են ռազմամթերքների արտադրությամբ։ Կառուցվում են բազմաթիվ ռազմական բազաներ, օդանավակայաններ, զենքի պահեստներ և զորանոցներ։ Ճապոնիայում նույնպես վերականգնում են բանակը և ռազմական արդյունաբերությունը։ Այժմ Ճապոնիայում կա ավելի քան 690 ամերիկյան ռազմական բազա։

Զգտնելով ձախողել կորեական հարցի վերջնական խաղաղ լուծումը, ամերիկյան կառավարող շրջանները մտադիր են շարունակել Հարավային Կորեան իրենց համար որպես ռազմական պլացդարմ պահելը։

Ամերիկյան իմպերիալիստների ոտնձգությունները, ամբողջ երկրները իրենց համար ռազմական պլացդարմ դարձնելու նրանց ձգտումները դեմ են առնում խաղաղասեր ժողովուրդների աճող, հզոր դիմադրությանը։

Էքսպանսիա— նշանակում է տերիտորիայի ընդարձակում, տարածում։ Բառը ունի ռազմական և քաղաքական իմաստ։



Ռազմական էքսպանսիա ասելով հասկանում ենք՝ ուրիշի տերիտորիայի բռնի զավթումը, ռազմական ուժի միջոցով։

Քաղաքական էքսպանսիա ասելով հասկանում ենք ուրիշ երկրների շուկաների հափշտակում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը վարում է իմպերիալիստական էքսպանսիոնիստական քաղաքականություն՝ աստիճանաբար զավթելով Անգլիայի ու Ֆրանսիայի շուկաները, ԱՄՆ-ը ձգտում է հասնել համաշխարհային տիրապետության։

Ուոլ-ստրիտ— կենտրոնական փողոց Նյու-Յորքում, որտեղ տեղավորված են ամերիկյան խոշոր բանկերը և առևտրա-արդյունաբերական ֆիրմաները։ Այս բառը խոսակցության մեջ օգտագործում են փոխաբերական իմաստով։ Երբ ասվում է «Ուոլ-ստրիտի» քաղաքականություն, ինկատի է առնվում խոշոր ֆինանսիստների, բանկիրների, խոշոր արդյունաբերողների քաղաքականությունը, որովհետև վերջիններս վճռական դեր են խաղում ԱՄՆ-ի քաղաքական կյանքում։

---

digitised by A.R.A.R.@

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՀԱՅՊԵՏՀՐԱՏԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՄԲ ԼՈՒՅՍ Է ՏԵՍԵԼ*

*ՍՏ. ԶԱՀՈՒՄՅԱՆ*— Հոդվածներ և ճառեր: *411 էջ, գինը 6 ռ., տիրաժ 8000։*

*Ա. ՄԱԿԱՐԵՆԿՈ*— Գիրք ծնողների համար: *398 էջ, գինը 6 ռ. 50 կ., տիրաժը 5000։*

*Ն. Վ. ԳՈԳՈԼ*— Երկերի ժողովածու, *վեց հատորով, հատոր 2-րդ։ 324 էջ, գինը 7 ռ. 10 կ., տիրաժ 5000։*

*Ա. ՏՎԱՐԴՈՎՍԿԻ*— «Վասիլի Տյորկին»: *288 էջ, գինը 7 ռ. 15 կ.։*

*ԳԱԼԻՆԱ ՆԻԿՈԼԱԵՎԱ*— «Հունձ»: *648 էջ, գինը 10 ռ. 55 կոպ.։*

Օգնություն քաղդպրոցների ունկնդիրներին:

Ուսումնական ձեռնարկ: *452 էջ, գինը 5 ռ. 90 կ., տիրաժ 10,000։*

*Բ. Ս. ՍՎԻՐՇՉԵՎՍԿԻ*— Մեքենա-տրակտորային պարկի շահագործումը: *647 էջ, գինը 12 ռ. 60 կ., տիրաժ 2000։*



*Տ. ԱՎԱՆԵՍՅԱՆ*— Մետալուրգիա: *104 էջ, գինը 1 ռ. 80 կ., տիրաժ 3000։*

*Մ. ԱԴՈՆՑ*— Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի մասին: *50 էջ, գինը 50 կ., տիրաժ 5000։*

*Ա. Ն. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*— Ամերիկյան ագրեսորների և նրանց գործակալների դեմ հայ ժողովրդի մղած պայքարի պատմությունից: *108 էջ, գինը 1 ռ. 05 կ., տիրաժ 5000։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

*ՎՖ 05387 Պատվեր 1107 Տիրաժ 9.000*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Սպանդարյանի № 8, 1953 թ.։*

digitised by A.R.A.R.@